## Հ. Յ. ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ԵՒՐՈՊԱՅԻ Կ. ԿՈՄԻՏԷՆ

*ժողովի կը հրաւիրէ Սէն Շամոնի բոլոր ընկերները այս երեքշաբթի երեկոյ ժամը 9ին Վարուժան Ակումբին մէջ։ Ներկայ կ'ըլլայ Կ. Կ.ի ներկայացուցիչը։*

## Հ. Հ. ՍՊԱՐԱՊԵՏ
## ԶՕՐ. ՆԱԶԱՐԲԷԿԵԱՆԻ ՅԻՇԱՏԱԿԻՆ

Նախկին պատերազմիկ Հայ Սպաներու միութիւնը պատիւ ունի յայտնելու որ, այսօր կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին, տեղի կ'ունենայ մեծ սգահանդէս Petit Journalի սրահին մէջ (մէթրօ' Cadet).

*կը խօսին՝ ԶՕՐ. ԿՈՐԿԱՆԵԱՆ, Պ. Պ. ՌՈՒԲԷՆ, Հ. Հ. Պատուիրակութեան ներկայացուցիչը, ՇԱՀԽԱԹՈՒՆԻ, ԶՕՐ. ՊԱՐԱԹՈՎ, Ֆրանսայի Նախկին Պատերազմիկներու ներկայացուցիչը, Զ. Ռ. Մ.ի ներկայացուցիչը։*



## Հ. Յ. Դ.
*ՓԱՐԻԶ*

ՊԷՔՈՆԻ Մասիս Նորակազմ խումբի դասախօսական ժողովը այս երեքշաբթի իրիկուն ժամը 8.30ին Bécon-les-Bruyèresի կայարանին Անիէռի կողմի հրապարակին վրայ Buvette de la Gareին մէջ (վերջին հաւաքատեղին), անկիւն Rue Tintoret եւ Ave. Chevreuil, կը խօսի՝ ընկ. Ս. Վրացեան, նիւթ՝ «ինչո՞ւ դաշնակցական ենք»։ Համակիրներ եւս կրնան ներկայ գտնուիլ։

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Աղասեան, Խոսրովեան, Ցարութիւնեան, Ցովակիմեան, Իփէքեան ընտանիքները խորին շնորհակալութիւն կը յայտնեն ամէն անոնց որոնք ցաւակցութիւն յայտնեցին իրենց սիրելի ՎԻԿՏՈՐԻ դառնաղէտ մահուան առթիւ։




IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H. STEPHAN

մեկնեցան՝ Գահիրէի մօտ, հանդիպեցան ոստիկանական շրջ-թայի մը։ Անգլիացի սպայ մը ձերբակալեց զանոնք եւ տարաւ հարցաքննութեան։

## Նաւային համաձայնութեան շուրջ

### Իտալիոյ պատասխանը

Նախորդ օր, Փարիզի իտալական դեսպանին միջոցաւ, նաւային համաձայնութեան մասին ֆրանսական առաջարկներուն դէմ Իտալիոյ պատասխանը յանձնուեցաւ Ֆրանսայի արտաքին նախարարութեան։

Իտալական պատասխանը իր գլխաւոր գիծերուն մէջ՝ ներշնչուած է անգլիական պատասխանին տուն տուող սկզբունքներէն։ Ըսենք թէ վէճը կը դառնայ ի նպաստ Ֆրանսայի 66,000 թոնոյի տարբերութեան մը շուրջ.

Իտալական կառավարութիւնը, յիշելէ վերջ թէ Ֆրանսայի, Անգլիոյ եւ Իտալիոյ միջեւ Հռոմի մէջ կնքուած համաձայնութիւնը հիմնուած էր, նկատի ունենալով Ուաշինկթընի եւ Լոնտոնի դաշնագրերը, գլխաւորաբար կը ծանրանայ Հռոմի համաձայնութեան 19րդ յօդուածին վրայ։ Այս յօդուածը կը տրամադրէ անհրաժեշտ տարողութեամբ նոր նաւերու շինութիւնը, ստիճանաբար փոխարինելու համար 1937ին, 1938ին եւ 1939ին անգործածելի նկատուելիք յածանաւերն ու ընդծովեաները։

Այս նաւերու շինութիւնը կը տեւէ 2 եւ 3 տարի։ Ուրեմն, նշանակուած թուականներուն որպէս զի անոնք վերջացած ըլլան, շինութիւնները պէտք է սկսին 1934ին, 1935ին եւ 1936ին։

Իտալիա չի ժխտեր այս յօդուածին ինպաստ Ֆրանսայի մեկնաբանումը։ Բայց կը ժխտէ 1935ին եւ 1936ին շինուելիք կարգ մը նաւերու տարողութիւնը։ Վէճը կը բխի ուրեմն նաւերու տարողութենէն։

Բանակցութիւնները դիւրացնելու մտադրութեամբ Իտալիա կ՚առաջարկէ 1935ի խորհրդակցութեան թողուլ 1936ին, հին նաւերու փոխարինութեան համար շինուելիք նաւերու տարողութեան գնահատումը։ Սակայն Իտալիա կը պահանջէ որ Ֆրանսա այժմէն իսկ յանձնառու ըլլայ ենթարկուելու այդ խորհրդակցութեան վճռին, ինչ որ ալ ըլլայ։

## Տրոցկի պիտի երթա՞յ Սպանիա

Գրեր էինք թէ Սպանիոյ արտաքին նախարարը պատասխանելով իրեն ուղղուած հարցման մը, անձնապէս անպատեհութիւն մը չէր տեսներ որ Ռուսիոյ նախկին պատերազմական գործավարը՝ աքսորեալ Տրոցկին, Սպանիա հաստատուի, պայմանաւ որ անհրաժեշտ երաշխիքներ տայ։

Սպանիոյ կառավարութեան Թուրքիոյ ներկայացուցիչը յայտնեց թէ Տրոցկի ուղղակի կամ անուղղակի որեւէ դիմում չէ կատարած Սպանիա մեկնելու անցագիր ստանալու համար։

Սակայն կը կարծուի թէ, Տրոցկի պրպտումներ կատարած է դէպի Սպանիա ճամբորդել կարենալու մամար, սակայն այն երկիրները որոնց հողէն պէտք է անցնի, մերժած են «վիզա» տալ։

## ՄԱՅԻՍ 28Ը ԿԸ ՏՕՆՈՒԻ

ՄԱՅԻՍ 30ԻՆ «ՓԸԹԻ ԺՈՒՌՆԱԼ»Ի ՍՐԱՀԻՆ ՄԷՋ

**Ա. Ե. ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ** Փարիզի Մանուկներու Պաշտպանութեան մասնաճիւղը

ՄԱՅԻՍ 14ԻՆ, ՀԻՆԳՇԱԲԹԻ, ՀԱՄԲԱՐՁՄԱՆ ՕՐԸ

Կը կազմակերպէ ԱՒԱՆԴԱԿԱՆ ՍՈՎՈՐՈՒԹԵԱՄԲ

## ՎԻՃԱԿԻ ՕՐ

Մանրամասնութիւնները մօտ օրէն։



## Հ. Յ. Դ.

Գ Ա Ւ Ա Ռ

ԼԻՈՆԻ Համազասպ խումբի ժողովը այսօր Չորեքշաբթի իրիկուն ժամը 8ու կէսին, 181 Րուտ Լաֆայէթ։

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՄԱՐՍԷՅԼԻ Բարձր Հայքի Երիտասարդաց Միութիւնը կը ծանուցանէ հայ հասարակութեան թէ իր գրադարանը փոխադրուած է 41 թիւ Պէրնար տը Պուա, Ալիս ճաշարանի ներքնասրահին մէջ։ Գրադարանը բաց է Հինգշաբթի իրիկունները ժամը 7-11 եւ Կիրակի առաւօտները ժամը 9-12։

Զ. Ե. Ո. Միութեան Փարիզի Վահագն Գրադարանին դասախօսութիւնը վաղը հինգշաբթի երեկոյ ժամը 9ին Ֆլորիայի մէջ։ Կը խօսի Պ. Ներսէս Օհանեան։ Դասախօսութենէն յետոյ մէկ ժամ սինէմա։ Կը հրաւիրուին անդամներն ու համակիրները։

**Գործ** կը փնտռէ հայ սպասուհի մը։ Դիմել «Յառաջ»ի խմբագրատունը։

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

—Էօզէրլիցի (Տէօրթ Եօլ) Յովհաննէս Առաքելեան կը փնտռէ իր հայրը՝ Վանիս, մայրը՝ Մարիամ, քոյրը՝ Սիմակուլ Առաքելեան (իրենց իսկական մականունը չյիշեր), իրհօրեղբայրները՝ Պաղտասար, Ռուբէն եւ Յովհաննէս։ Տեղահանութեան միջոցին իր հայրը զինքը յանձնած է իր հօրեղբօր, որ Հասան Պէյ գիւղին մէջ երկաթուղիի մեքենավար էր։ Իմացնել Յառաջի խմբագրութեան։

— Կը փնտռեմ եղբայրներս Սասունի Ահարոնք գիւղացի Յովհաննէս, Կարապետ եւ Պօղոս Շահինեան, որոնք ընդհ. պատերազմէն առաջ կը գտնուէին Տիգրանակերտի Հուսայնան գիւղը։ Կրտսեր եղբայրս Արմենակ 1914ին կ՚աշխատէր Բէմախի աղահանքներուն մէջ։ Մինչեւ այսօր իրենց մասին լուր չկայ։ Իրենց հասցէն գիտցողներէն կը խնդրուի իմացնել Շահինեան Մկրտիչի 96 bis rue de la Tour-Billy, Argenteuil; (S. et O.) France։ Ճշգրիտ լուր տուողին 500 ֆրանք նուէր։

— Ակնցի Մելքոն Գաֆթարեան (22 տարեկան) կը փնտռէ իր եղբայրը՝ Աւետիս (26 տարեկան) եւ մայրը՝ Եղիս Գաֆթարեան։ 5 տարի առաջ կը գտնուէին Ակն եւ լուր առնուած էր թէ պիտի մեկնին Ամերիկա, կը փնտռէ նաեւ իր մօրեղբօրորդիները Խաչատուր եւ Վռամշապուհ Նետարեան եւ Խնդիր Գաֆթարեան որոնք կը գտնուէին Նիւ Եորք։ Իմացնել «Յառաջ»ի խմբագրութեան։





## «ՆԱՀԱՏԱԿ ԳՐԱԳԷՏՆԵՐՈՒ ԲԱՐԵԿԱՄՆԵՐ»

### ԲԱՑՈՒԱԾ Է ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆԸ

Ն. Գ. Բ.ի հրատարակութեանց առաջին շարքին զոր կը կազմեն հետեւեալ հեղինակներու երկերը.

1.— Ռուբէն Զարդարեան (լոյս տեսած)
2.— Մելքոն Կիւրճեան »
3.— Գեղամ Տէր-Կարապետեան (մամուլին յանձնուած)
4.— Գեղամ Բարսեղեան »
5.— Տիգրան Չէօկիւրեան (պատրաստութեան մէջ)
6.— Արտաշէս Յարութիւնեան »
7.— Գրիգոր Զօհրապ »
8.— Արփիար Արփիարեան »
9.— Երուանդ Օտեան »
10.— Երուանդ Սրմաքէշխանլեան »
11.— Ռուբէն Սեւակ »
12.— Տիրան Չրաքեան »

Սոյն հատորները լոյս կը տեսնեն մաքուր տպագրութեամբ, գեղազարդ կողքով եւ հեղինակներուն պատկերով։

Սովորական թուղթի վրայ տպուած իւրաքանչիւր հատորի գինն է 20 ֆրանք (Ֆրանսա եւ գաղութներ, Պալքաններ) եւ մէկ տոլար (Մնացեալ երկիրներ)։

Վերոյիշեալ 12 հատորներուն այժմէն եւ կանխիկ բաժանորդագրուողները, կը վճարեն միայն 200 ֆրանք (Ֆրանսա եւ գաղութներ, Պալքաններ) կամ 10 տոլար (Մնացեալ Երկիրներ). եւ կը ստանան ընտիր թուղթի եւ կողքի վրայ տպուած եւ թուագրուած օրինակներ։

Անոնք որ գնած են արդէն առաջին հատորը, կամ առաջին եւ երկրորդ հատորները, ընդհանուր բաժնեգինէն կը զեղչեն համապատասխան գումարը։

Բաժնեգինները ղրկել հետեւեալ հասցէին.— Dr. Krikorian, 126 Faub. St. Denis, Paris 10e.



Le Gérant H. STEPHAN

## ՄԱՅԻՍ 28Ը ԿԸ ՏՕՆՈՒԻ

ՄԱՅԻՍ 30ԻՆ «ՓԸԹԻ ԺՈՒՌՆԱԼ»Ի ՍՐԱՀԻՆ ՄԷՋ

## ԱՊՐԻԼ 11)24Ը ՇԱՎԻԼԻ ՄԷՋ

*Կազմակերպուած Շավիլի Երիտ. երկսեռ միութեան կողմէ*

*Այսօր Կիրակի ժամը 2.30ին* Salle Patin*ի մէջ, 114* Grand'Rue Chaville.

Առնել *1 թիւ հանր. իջնել* Ancienne Mairie de Chaville




























































IMPRIMERIE - **MASSIS** - ÉDITIONS 208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H. STEPHAN

## Ռուսիոյ ողողումները

Տնիէփէր գետինեւ իր ճիւղերուն յորդումով, ողողուած են շրջակայ հողերը։ Աւելի քան հարիւր գիւղեր եւ Քրէմէնչուգ քաղաքը ջուրերու տակ են։ Բազմաթիւ փողոցներու մէջ ջուրը հասած է տուներու երկրորդ յարկը։ Քիեւի եւ ուրիշ քաղաքներու մէջ, բազմաթիւ թաղեր եւ հարիւրաւոր տուներ ողողուած են։ Ըստ առաջին գնահատումներու, նիւթական վնասները կը հասնին քանի մը միլիոն ռուբլիի։

Նիժնի-Նովկորոտի մէջ, Վոլկա գետը յորդեցաւ։ Քարափներուն վրայ գտնուած շատ մը հաստատութիւններ, ինքնաշարժի գործարան մը եւ ամերիկեան արուարձանի մէկ մասը ողողուած են։

## ԽՌՈՎՈՒԹԻՒՆՆԵՐ ՍՊԱՆԻՈՅ ՄԷՋ

### ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆՆԵՐ ԵՒ ԱՐՔԱՅԱԿԱՆՆԵՐ ԴԷՄ ԱՌ ԴԷՄ

Մատրիտի արքայական կուսակցութեան անդամները ժողով մը գումարեցին իրենց կեդրոնատեղիին մէջ։ Ճառախօս մը պահանջեց համախմբել արքայական ուժերը, պայքարելու համար յառաջիկայ ընտրութեանց ընթացքին։

Ժողովը վերջանալուն, երիտասարդ արքայականներ ցոյց մը կատարեցին։ Հոն գտնուող ինքնաշարժի վարիչ մը պատասխանեց — կեցցէ՛ հանրապետութիւնը»։ Ասոր վրայ արքայականները յարձակեցան եւ ծեծեցին կառավարը։ Փողոցէն անցնող ուրիշներ ուզեցին պաշտպանել կառավարը։ Ասով կռիւը սաստկացաւ։ Բազմաթիւ վիրաւորներ կան։ Հանրապետականները կատղած, կրակ տուին արքայականներու պատկանող երեք ինքնաշարժներու։

Ոստիկանները փորձեցին հանդարտեցնել կռուարարները. բայց անօգուտ։ Կռիւը աւելի սաստկացաւ։ Ձիաւոր ոստիկաններն արդէն հասեր էին կռուի վայրը եւ պատրաստուէր էին սուրով յարձակիլ կռուարարներուն վրայ, Ընկերվարականներու միջամտութեան վրայ միայն, ոստիկանները սուրերը դրին պատեանին մէջ։

Ոստիկանութիւնը բազմաթիւ ձերբակալումներ կատարեց։

## Ռումանիոյ քաղաքական կացութիւնը

Ռումէն ժողովրդական կուսակցութեան վարիչ կոմիտէի ժողովէն, մարաջախտ Ավէրէսքօ հրաժարեցաւ չէզոք դիրքէն զոր ցարդ բռնած էր հանդէպ Եօրկայի դահլիճին, այս անգամ բռնելու համար թշնամական դիրք մը։ Ավէրէսքոյի կարծիքն այն է թէ վտանգաւոր բան է թագաւորը խառնել քաղաքական կուսակցութեանց վէճերուն։

Խորհրդարանի լուծման եղանակը, առանց որեւէ վիճաբանութեան եւ առանց թոյլ տալու որ մեծամասնութիւնը արտայայտուի ընդդէմ կառավարութեան, սահմանադրութեան տրուած կոպիտ հարուած մըն է, կը նկատէ Ավէրէսքօ։

## Աւստրօ-գերման համաձայնութեան շուրջ

Գերման դահլիճը երէկ զբաղեցաւ այն հրահանգներով, որոնք պիտի տրուին Գերմանիոյ ներկայացուցիչներուն, Ժընեւի մէջ Մաքսային համաձայնութեան շուրջ վիճաբանութեանց առթիւ։

Ըստ «Մորնինկ Փոսթ»ի թղթակցին, Գերմանիոյ արտաքին նախարարը Քուրցիուս, որ պիտի գտնուի Ժընեւի գերման պատուիրակութեան գլուխը, պիտի պաշտպանէ այն տեսակէտը թէ Ֆրանսա ընդունած է աւստրօ-գերման մաքսային համաձայնութեան լո՛կ տնտեսական հանգամանքը եւ հետեւաբար, գերման պատուիրակութիւնը պիտի կրնայ հարցին վիճաբանութիւնը սահմանափակել իրաւական եւ տնտեսական գետնի վրայ։

Հարցին տնտեսական կողմին գալով, գերման պատուիրակութիւնը պիտի ջանայ ապացուցանել թէ Պ. Պրիանի ծրագիրը կուգայ լրացնել եւ ո՛չ թէ փոխարինել մաքսային համաձայնութիւնը։ Գալով իրաւական կողմին, պէտք պիտի ըլլայ ապացուցանել թէ մաքսային համաձայնութիւնը դէմ չէ գոյութիւն ունեցող դաշնագրերուն։

Իսկ Աւստրիոյ արտաքին նախարարը Պ. Շօպէր հետեւեալ յայտարարութիւններն ըրաւ,— Աւստրիոյ եւ Գերմանիոյ պատուիրակները Ժընեւի մէջ պիտի պաշտպանեն արդար դատ մը։ Ձենք ծածկեր թէ դժուար է աշխատանքը։ Բայց կարելի է արդէն յուսալ թէ երկու պատուիրակութեանց միացեալ ճիգերը պիտի յաջողին յաղթել ընդդիմութեանց, մանաւանդ որ Պերլինի եւ Վիեննայի մէջ նախատեսուած տնտեսական մերձեցման աշխատանքները կը համապատասխանեն Եւրոպայի ընդհ. անհրաժեշտութեան։

## Տրոցկիի մուտքը արգիլուած

Գրեր էինք թէ Տրոցկի արտօնուած է բնակիլ Սպանիա։ Լուրը կը հերքուի այս անգամ Լոնտոնէն։ Սպանիոյ կառավարութիւնը հաղորդած է Թուրքիոյ թէ չի կրնար արտօնել Տրոցկիի Սպանիա բնակութիւնը։

Հանրապետութեան հռչակումէն անմիջապէս վերջ, Տրոցկի դիմում կատարած էր Սպանիա երթալու համար։





**Ա. Ե. ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ** Փարիզի մանուկներու պաշտպանութեան մասնաճիւղը կը տօնէ Համբարձման տօնը, վիճակի աւանդական սովորութեամբ այս Հինգշաբթի կէսօրէ վերջ ժամը 2.30ին SALLE d'HORTICULTUREի վերեւի սրահին մէջ, 84 Rue de Grenelle, Métro Bac.

Ճոխ եւ աժան պիւֆէ, նուագ, պար, երգ

### ԵՐԵԿՈՅԹ

կազմակերպուած Փարիզի Սեբաստիոյ Նահանգային միութեան կողմէ։ Այս Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին Salle Voltaireի մէջ, մէթրօ Օտէօն

Բանախօսութիւն, երգ, արտասանութիւն. եւայլն



## Հ. Յ. Դ.

ԳԱՒԱՌ

ԼԻՈՆԻ Պատ. միութեանընդհ. ժողովը՝ այս Հինգշաբթի իրիկուն, ժամը 8ին, Դրադարանին մէջ։ Խիստ կարեւոր օրակարգ։ Ներկաւ կ'ըլլայ Կ.ի ներկայացուցիչը։ Բացականները նկատի պիտի առնուին։

ՍԱԼԻՆ ՏԸ ԺԻՌՕՒ Բաբկէն Սիւնի խումբի ժողովը այս Հինգշաբթի իրիկուն ժամը 5ին ծանօթ հաւաքատեղին։ Կարեւոր օրակարգ։ Ներկայանալ անդամատետրով։ Պարտաւորիչ ներկայութիւն։

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Այրի Տիկին Աւետիս Պօյաճեան եւ իր աղջիկները՝ օրիորդներ Զապէլ, Վերժին եւ Ժօրժէթ, Պ. Աբրահամ Պօյաճեան, Պ. Պ. Յովհաննէս եւ Յակոբ Տաւուտլարեան, Պ. Արամ Գալըպճեան իրենց շնորհակալութիւնը կը յայտնեն ամէն անոնց որոնք անձամբ կամ նամակաւ ցաւակցութիւն յայտնեցին իրենց ամուսնոյն, հօր, եղբօր եւ ազգականին՝

ԱՒԵՏԻՍ ՊՕՅԱՃԵԱՆԻ

մահուան առթիւ։

Յուղարկաւորութիւնը կատարուեցաւ Ապրիլ 8ին Ուրբաթ կէսօրէ վերջ ժամը 2ին։ Հանգուցեալին մարմինը ամփոփուեցաւ Պիյեանքուրի գերեզմանատան մէջ։



### ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Կը փնտռուի Շ. Գարահիսարի Աղաւանիս գիւղէն Հայկազուն Տիւտիւքճեան կամ Տէրտէրեան որ 1916ին տեղահանութեան միջոցին տեսնուած է, Սեբաստիա - Մալաթիա ճամբուն վրայ։ Իր մասին լուր ունեցողներէ կը խնդրուի իմացնել՝ իր քրոջ Ազնիւ Փիլիքեանի, 18 Rue Denoyez, Paris (20).

Կը խնդրուի յունահայ եւ Սուրիահայ թերթերէն արտատպել։




Le Gérant H. STEPHAN

ներուն կարենալ դիմագրաւելու համար, պիտի ստիպուին քիչ ատենէն օրավարձքերու վրայ նոր դեղչ մը եւս պարտադրել գործաւորներուն։

Գործատէրերու այս որոշման վրայ, բանուորական կազմակերպութիւնները որոշեցին այսօրուընէ սկսեալ դադրեցնել աշխատանքը ամբողջ շրջանի գործարաններուն մէջ։ Այս կերպով ուրեմն 400 գործարաններ կը մնան առանց գործաւորի և 120000 գործաւորներ առանց աշխատանքի։

## Ուսթրիքի գայթակղութեան շուրջ

### ՆԱԽԱՐԱՐՆԵՐՈՒ ԴԱՏԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ

Այսօր է որ Ծերակոյտը իբր գերագոյն ատեան պիտի կատարէ դատավարութիւնը Ուսթրիքի գործին առթիւ, ամբաստանուած նախարարներու, Ռաուլ Բէրէ, Ռընէ Պէնար, Կաստոն Վիտալ եւ Ալպէր Ֆավր։

Ծերակոյտի անդամներու ներկայութիւնն ու բացակայութիւնը ճշդուելէ վերջ, նախագահը պիտի ձեռնարկէ ամբաստանեալներու հարցաքննութեան, յետոյ պիտի կարդացուի ընդհ. դատախազին ամբաստանագիրը։

Հաւանական կը նկատուի որ յաւելուածական քննութիւններու որոշում տայ ծերակոյտը, անբաւարար նկատելով ամբաստանութեան տուն տուող փաստերը։

## Իրաքի քարիւղի պայմանագրութիւնը

Պաղտատէն տրուած լուրի մը համաձայն, կը յուսացուի որ Իրաքի կառավարութեան եւ Իրաքի քարիւղի ընկերութեան միջեւ կնքուած համաձայնութիւնը վաւերացուի այս շաբթուան մէջ։

Տեղական մամուլին մէկ մասը բուռն պայքար կը մղէ այս համաձայնութեան կարգ մը կէտերուն դէմ, այն առարկութեամբ թէ, Իրաք իր հարստութեան ամէնէն կարեւոր աղբիւրներէն մէկը կը կորսնցնէ։

Առեւտրական շրջանակները կը կարծեն թէ անգլիական, ֆրանսական, հոլանտական եւ ամերիկեան շահեր ներկայացնող քարիւղային ընկերութեան մը հետ համաձայնութիւն մը շատ լաւ հետեւանքներ կրնայ ունենալ երկրին առեւտուրին վրայ։

Իրաքի քարիւղը դէպի միջերկրականեան երկու նաւահանգիստներ տանող խողովակներու շինութեան ծախք կը գնահատուի մօտ 10 միլիոն անգլիական ոսկի։

## Բոլշեւիկները Հնդկաստանի մէջ

Վերջին 10 օրերու ընթացքին, Անգլիոյ պահպանողական կուսակցութիւնը շատ կարեւոր տեղեկութիւններ ստացած է Հնդկաստանի եւ անգլիական զանազան գաղթավայրերու մէջ՝ բոլշեւիկներու գործունէութեան մասին։

Այս տեղեկութիւնները որոնք տրուած են նախկին բոլշեւիկ լրտեսի մը կողմէ, խորհրդարանին պիտի հաղորդէ պահպանողական պետերէն Օ. Չէմպըրլէյն, որ արտաքին նախարարութեան վարկի քուէարկութեան առթիւ, խնդրոյ առարկայ պիտի դարձնէ բոլշեւիկներու հականգլիական գործունէութիւնը։

Պիտի պահանջուի կառավարութենէն որ յստակօրէն յայտնէ թէ ինչպէս կ'ըմբռնէ յանձնառութիւնը որ ստանձնեց 1929 յուլիսին, չհանդուրժելու համար բոլշեւիկներու միջամտութեան, Անգլիոյ ներքին գործերուն մէջ։

Վիէնի Էսթրէգէն Թաղամասի մանկապարտէզի նուիրատուութեան ցանկը.—

Հ. Թորոսեան, Մ. Տօնապետեան, Կ. Մարգարեան, Գ. Պերպերեան 100ական։ Գ. Թաշճեան, Ս. Տօնապետեան, Գ. Շմաւոնեան, Գ. Կարապետեան 50ական։ Պ. Այանեան 40, Կ. Աւետիսեան 30, Ս. Թէրզի-Եազուպեան, Ա. Ճիրնազեան, Օ. Ուզունեան, Կ. Աբգարեան, Ա. Շահպազեան Գ. Թէրզի-Եազուպեան, Ա. Մինասեան 25ական ֆրանք, Թ. Շաթաֆեան, Ե. Չէլէպեան, Օ. Ագպըյըգեան, Բ. Թադէոսեան 20ական Տուտումեան, Յ. Գաբրիէլեան 15ական, Ի. Տօնիկեան, Ս. Գալուստեան, Տ. Վարդապետեան, Օր. Շահպազեան, Տիկին Կիրակոսեան, Տ. Այանեան, Ե. Թերզի-Եազուպեան, Տ. Լաթաֆեան, Յ. Զատիկեան, Կ. Սապունճեան, Ս. Սապունճեան, Ս. Անդրեասեան, Ա. Ալիքսանեան, Օ. Առաքելեան, Ս. Լուսարէեան, Ն. Մուրատեան, Տ. Կարապետեան, Գ. Նազգաշեան, Կ. Տէր Մինասեան, Տ. Մ. Ղարիպեան, Տ. Մարգարեան, Ե. Եայլաեան, Խ. Վարդերեսեան, Ծ. Գալուստեան, Ա. Չէլէպեան, Տ. Փ. Մինասեան, Տ. Աբգարեան, Լ. Յովսէփեան, Կ. Սուքիասեան, Մ. Տօնապետեան. Վ. Վարդանեան 10ական, Դ. Յովիւեան 10 ֆր., Տ. Է. Սաղազլըեան, Ս. Թիլպիեան, Emil Rocha 6ական, Գ. Գինոսեան 5 ֆրանք։ Գումար 1290 ֆրանք։

(կնիք)



## ՄԱՅԻՍ 28Ը ԿԸ ՏՕՆՈՒԻ

### ՄԱՅԻՍ 30ԻՆ «ՓԸԹԻ ԺՈՒՌՆԱԼ»Ի ՍՐԱՀԻՆ ՄԷՋ

Գեղարուեստական ճոխ բաժին

## ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԵՐԵԿՈՅԹ

Ի ՆՊԱՍՏ ՄՈՆՄԱՐԹՐԻ SACRÉ COEURի ՈՐԲԱՆՈՑԻՆ

Այս Ուրբաթ իրիկուն ժամը 20.45ին

HOTEL MAJESTIC, 19 Ave Kléber

Կը մասնակցին՝ Տիկ. Segond-Weber, Պ. Maurice Donneaud (Բոմէտի Ֆրանսէզէն), եւայլն, Օր. Բաբաեան կ'երգէ հայերէն երգեր։

ՄՈՒՏՔ՝ 25 ԵՒ 15 ՖՐԱՆՔ



## Հ. Յ. Դ.

ԴԱՒԱՌ

ՊԷԲՈՆԻ Մասիս Խումբի հերթական դասախօսական ժողովը այսօր Երեքշաբթի իրիկուն ժամը 8.30ին, նախկին հաւաքատեղին (Bécon les Bruyères կայարանի Անիէռի կողմի, Buvette du la Gareին մէջ)։ Շարունակութիւն նախորդ ժողովի նիւթին։ Կը խօսի Ընկ. Շ. Միսաքեան։

## ՑՈՒՇԱՏԵՏՐ

Զ. Ե. Ո. Միութեան Փարիզի Վահագն Գրադարանին դասախօսութիւնը այս Հինգշաբթի Ֆլորիայի մէջ։ Կը խօսի Կ. Սասունի, «Արեւմտահայ քաղաքական մամուլը անցեալի մէջ եւ ներկայիս» նիւթի մասին։ Կը հրաւիրուին անդամներն ու համակիրները։ Մէկ ժամ սենեակ։

Զ. Ե. Ո. Միութեան Պիյեանքուր Իսի լէ-Մուլինոյի մասնաճիւղը դաշտահանդէս մը պիտի տայ 7 Յունիսին, իր գրադարանին համար։ Կը խնդրուի նկատի ունենալ այդ թուականը։

ՏԱՐՕՆ- Տուրուբերանի Հայր. Միութիւն (Մարսէյլ)։ Հաճեցէք ղրկել պատճէնը ձեր կոչին։

Ա. Ե. Հ. Կ. Խաչի Կրընոպլի մասնաճիւղը շնորհակալութեամբ ստացած է Պ. Ռ. Զօրաեանէ 100 ֆրանք։

Բժիշկազէտ Պ. Ռուբէն Եուսուֆեանէ կը խնդրուի իր հասցէն յայտնել «Յառաջ»ի վարչութեան։

## ՓՈԽԱԴՐՈՒԱԾ Է

Սէն-Շամոնի մէջ Տպարան «Տարօն»ը փոխադրուած է 1 rue de l'Asile Alamagny, St. Chamond (Loire).

Բարեկամներէ եւ յաճախորդներէ կը խնդրուի անձամբ կամ նամակաւ դիմել վերոգրեալ հասցէով Պ. K. Garabedianի։

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Կը փնտռուի Շ. Գարահիսարի Աղուանիս գիւղէն Հայկազուն Տիւտիւքճեան կամ Տէրտէրեան որ 1916ին տեղահանութեան միջոցին տեսնուած է, Սեբաստիա - Մալաթիա ճամբուն վրայ։ Իր մասին լուր ունեցողներէ կը խնդրուի իմացնել՝ իր քրոջ Ազնիւ Փիլիքեանի, 18 Rue Denoyez, Paris (20).

Կը խնդրուի յունահայ եւ Սուրիահայ թերթերէն արտատպել։

— Կը փնտռեմ եղբայրս՝ Տիգրան Պայլնտրեան, որ 1931 Մայիս 11էն ի վեր մեկնած է տունէս։ Իր մասին մտահոգուած եմ։ Կը խնդրեմ վերոյիշեալ թուականէն ի վեր զինք ուէւէ տեղ տեսնողներէ կամ իր մասին լուր ունեցողներէ իմացնել Mesrob Bayendrian, Ave. Bernard Palissy, No. 3 VI (Cité du Vallons, Décines, Isère.

— Կը փնտռեմ եղբայրներս Սասունի Անհարօնք գիւղացի Յովհաննէս, Կարապետ եւ Պօղոս Շահինեան, որոնք ընդհ. պատերազմէն առաջ կը գտնուէին Տիգրանակերտի Հուսայնան գիւղը։ Կրտսեր եղբայրս Արմենակ 1914ին կ'աշխատէր Բէմոխի աղահանքներուն մէջ։ Մինչեւ այսօր իրենց մասին լուր չկայ։ Իրենց հասցէն գիտցողներէն կը խնդրուի իմացնել Շահինեան Մկրտիչի 96 bis rue de la Tour-Billy, Argenteuil, (S. et O.) France։ Ճշգրիտ լուր տուողին 500 ֆրանք նուէր։




IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H STEPHAN

IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H. STEPHAN

թիւնը առժամեայով, այսինքն յունիս 1էն սկսած կ'ըլլայ։

Խնայողութեան պատճառով, պաշտօնեաներէն հարիւրին երկուքը միայն բացը կը մնան։

Պետական ընդհ. ծախքերէն հարիւրին տասնըմէկ կրճատում պիտի ըլլայ։ Այսպէս ազգ. պաշտպանութեան պիւտճէէն 6, հանրօգուտէն 9, կրթականէն 1, տնտեսականէն ալ 4 միլիոն ոսկիի խնայողութիւն եղած է։ Ներքին, դատական եւ առողջապահական գործավարութեանց պիւտճէներուն մէջ գրեթէ ոչ մէկ կարեւոր փոփոխութիւն եղած է։ Ազգ. Մեծ Ժողովի պիւտճէէն կէս միլիոն, կրօնական գործերու տնօրէնութենէն ալ 800 հազար ոսկի զեղչուած է։

Նոր պիւտճէն 189 միլիոն ոսկիի վրայ կազմուած է։ Թափուր պաշտօններու համար տրուած վարկը ջնջուած է, ինչպէս նաեւ կարգ մը պաշտօններ։ Պետական Խորհուրդի պաշտօնեաներու ցանկէն 15 հոգի բացը կը մնան։ Մամլոյ ընդհ. տնօրէնութիւնն ալ ջնջելու որոշում տրուած է։

Պաշտօնեաներուն մէկ մասը արտաքին, մէկ մասն ալ ներքին գործավարութիւններուն մէջ պաշտօն պիտի ստանձնեն։ Կարգ մը կրճատումներ եղած են նաեւ Բարձրագոյն Տնտեսական Խորհուրդի պաշտօնէութեան մէջ։

Հաւանական է որ պիւտճէին մէջ ուրիշ կարգ մը փոքր փոփոխութիւններ ալ ըլլան Գործավարներու Խորհուրդին քննութեան միջոցին։

## Ռուս գիւղացիները կառավարութեան դէմ

Խորհրդային կառավարութեան ներկայացուցիչներուն խստութիւններէն զայրացած, բազմաթիւ գիւղացիներ յարձակեցան գիւղի մը վրայ՝ Օտեսայի մօտերը եւ սպաննեցին խորհրդային երկու բարձր պաշտօնատարներ եւ 8 բոլշեւիկ գործաւորներ, որոնց յանձնուած էր շրջանը համայնացնելու գործը։ Բոլշեւիկեան խմբակէն երեք հոգի միայն կրցան ազատիլ գիւղացիներու կատաղութենէն։

## Նոր խռովութիւններ Պիրմանիոյ մէջ

Պիրմանիոյ զանազան շրջաններուն մէջ նոր խռովութիւններ յառաջ եկան ընդդէմ անգլիական իշխանութեանց։ Տեղին զօրախումբերը յաջողեցան գրաւել ըմբոստներու բանակատեղին։ 250ի չափ ըմբոստներ կրցան փախուստ տալ եւ ազատիլ։ Գիւղի մը մէջ, ոստիկանական ջոկատները ստիպուեցան կրակ բանալ ըմբոստներու վրայ։ Պիրմաններ յարձակեցան Սիամցիներու գիւղի մը վրայ եւ սպաննեցին երեք հոգի։

## Ռումանիոյ ընտրական պայքարը

Ընտրութիւններու նախընթաց վերջին կիրակին ըլլալով, նախորդ օր, Ռումանիոյ բոլոր կողմերը մեծ գործունէութիւն ցոյց տուին զանազան խմբակցութիւնները։

Վարչապետ Եորկա այցելեց Եաշ եւ Մոլտավիոյ զանազան քաղաքները. իր մէկ ճառին մէջ ըսաւ.— Թագաւորը ինծ յանձնեց մեծ աւել մը երկիրը մաքրելու համար պորտաբոյծներէն։

Ընդդիմադիրները մեծ ջանքեր կը թափեն. բայց ընդհանուր տպաւորութիւնն այն է թէ կառավարութիւնը պիտի ըլլայ շահողը։

Նախորդ վարչապետ Միրոնէսքօ եւ նախկին դատական նախարար Եունեան, ազգային գիւղացիական կուսակցութեան կողմէ պաշտօն ստացան ներկայանալու թագաւորին, բողոքելու համար ընտրական պայքարի առթիւ յառաջ եկած խռովութեանց մասին, որոնց զոհ գացին կուսակցութեան երկու անդամները։

## "ՄԱՅԻՍ 28,, Ը ԿԸ ՏՕՆՈՒԻ

### ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

Մայիս 30ին Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին

Փըթի ժուռնալի սրահին մէջ, Մէթրօ Քատէ

կը խօսին՝ ՇԱՒԱՐՇ ՄԻՍԱՔԵԱՆ եւ Մ. ԳՈՒՅՈՒՄՃԵԱՆ

ԲԱՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ, ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՃՈԽ ԲԱԺԻՆ

կը մասնակցի «ՍԻՓԱՆ» երգչախումբը ղեկավարութեամբ պ. ՍԱՔՕ ՅԱԿՈԲԵԱՆԻ։

Իսկ լէ Մուլինօի Թաղապետարանի 40 հոգինոց նուագախումբը ղեկավարութեամբ Mr. Iserofի կը նուագէ հայկական երգեր։

### ՌՈԱՆ

Այս Շաբաթ իրիկուն ժամը 8,30ին

կը խօսի՝ ՎԱՀԱՆ ՀԱՄԲԱՐՁՈՒՄԵԱՆ

## Հ. Յ. Դ.

### ՓԱՐԻԶ

ՊԻՑԵԱՆՔՈՒՌԻ Զաւարեան կոմիտէի ժողովը այս ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին. 186 Av. Verdun։ Ներկայ կ'ըլլայ Կ. Կ.ի ներկայացուցիչը։

ԱՆԻԷՌ, Պուա - Քոլոնպի Զէյթուն կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ Եռագոյն, Փոթորիկ եւ Վիշապեան խումբերը վաղը Հինգշաբթի իրիկուն ժամը ճիշդ 8.45ին, 80 Rue Charles-Chefson, Պուա Քոլոնպ։ Կարեւոր օրակարգ։ Բացակաները նկատի պիտի առնուին։

## ՑՈՒՇԱՏԵՏՐ

ՖՐԱՆՍԱԿԱՆ բանակի հայ նախկին կամաւորներու միութեան ընդհ. ժողովը 29 մայիս, ժամը 9ին, 4 Rue de la Grange Bateliere ծխավաճառին վերնայարկը։

Բոլոր նախկին կամաւորները որոնք դեռ չեն արձանագրուած, կը խնդրուին ներկայ գտնուիլ։ Կարեւոր օրակարգ։

Բոլոր անդամներէն կը խնդրուի անպայման ներկայ գտնուիլ։

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ

ԼԻՈՆ.— Ապրիլեան սգահանդէսի առթիւ Աֆիոն Գարահիսարի Հայր. Միութիւնը փոխան ծաղկեպսակի նուիրած է 40 ֆր. նաեւ Տէրզօրի մէջ կառուցուելիք յուշարձանին կամաւոր նուիրատուութեամբ, հաւաքուած է 200 ֆր. 05 որ պիտի յատկացուի իր նպատակին։ Մեր շնորհակալութիւնները։

Զ. Ո. Մ. Մասնաճիւղ

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Կը փնտռուի Շ. Գարահիսարի Աղուանիս գիւղէն Հայկազուն Տիւտիւքճեան կամ Տէրտէրեան որ 1916ին տեղահանութեան միջոցին տեսնուած է, Սեբաստիա - Մալաթիա ճամբուն վրայ։ Իր մասին լուր ունեցողներէ կը խնդրուի իմացնել՝ իր քրոջ Ազնիւ Փիլիքեանի, 18 Rue Denoyez, Paris (20).

Կը խնդրուի յունահայ եւ Սուրիահայ թերթերէն արտատպել։

— Կը փնտռեմ եղբայրներս Սասունի Ահարոնք գիւղացի Յովհաննէս, Կարապետ եւ Պօղոս Շահինեան, որոնք ընդհ. պատերազմէն առաջ կը գտնուէին Տիգրանակերտի Հուսայնան գիւղը։ Կրտսեր եղբայրս Արմենակ 1914ին կ'աշխատէր Բէյմախի աղահանքներուն մէջ։ Մինչեւ այսօր իրենց մասին լուր չկայ։ Իրենց հասցէն գիտցողներէն կը խնդրուի իմացնել Շահինեան Մկրտիչի 96 bis rue de la Tour-Billy, Argenteuil, (S. et O.) France։ Ճշգրիտ լուր տուողին 500 ֆրանք նուէր։









IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H. STEPHAN

## Պիրմանիոյ խռովութիւնները

Պիրմանիոյ մէջ ըմբոստութիւնը սկսաւ նորէն սաստկանալ եւ կացութիւնը այնքան վրդովիչ է որ կառավարութիւնն ստիպուեցաւ Կալկաթայէն Պիրմանիա ղրկել 5000 հոգինոց զօրախումբ մը։

Լաշիօի շրջանին մէջ բազմաթիւ գիւղացիներ կը միանան ըմբոստներուն։

## Անկում Մուսոլինիի...

Մուսօլինի իր ձիով ոստում մը փորձած պահուն, վար ինկաւ եւ դէմքին վրայ ստացաւ մէկ քանի սկրդուքներ. Նախնական դարմաններէ վերջ, «ցուցէ» վերադարձաւ իր գրասենեակը աշխատելու։

## "ՄԱՅԻՍ 28,, Ը ԿԸ ՏՕՆՈՒԻ

### ՓԱՐԻԶ

ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԱԾ ԵՒՐՈՊԱՅԻ Հ. Յ. Դ. ԿԵԴՐ. ԿՈՄԻՏԷԻՆ ԵՒ ՓԱՐԻԶԻ ԿՈՄԻՏԷԻՆ ԿՈՂՄԷ

*Մայիս 30ին Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին*

*Փըթի ժուռնալի սրահին մէջ, Մէթրօ Քատէ*

*կը խօսին՝ ՇԱՒԱՐՇ ՄԻՍԱՔԵԱՆ եւ Մ. ԳՈՒՅՈՒՄՃԵԱՆ*

*ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՃՈԽ ԲԱԺԻՆ*

գեղարուեստական բաժնին կը մասնակցին տիկ. ԳԵՒՈՆԵԱՆ, օր. Աղաբէկեան, պ. Ս. Նաւասարդեան (երգ), Ս. ԹՈՐՈՍԵԱՆ (արտասանութիւն), «ՍԻՓԱՆ» երգչախումբը ղեկավարութեամբ պ. ՍԱՔՕ ՅԱԿՈԲԵԱՆԻ։

Մուտքը ազատ է

### ՌՈԱՆ

*Այս Շաբաթ իրիկուն ժամը 8,30ին*

*կը խօսի՝ ՎԱՀԱՆ ՀԱՄԲԱՐՁՈՒՄԵԱՆ*

### ՎԻԷՆ

Այս կիրակի կէսօրէն վերջ ժամը 2ին

Cercle Catholiqueի սրահին մէջ, 1 Rue des Cloîtres

*կը խօսի՝ ՕՀԱՆ ԿԱՐՕ*

գեղարուեստական ճոխ բաժին,

երգեր եւ արտասանութիւններ

### ԼԻՈՆ

*6 Յունիս Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին*

*Գ, Թաղապետարանի սրահին մէջ*

*կը խօսի՝ ՍԻՄՈՆ ՎՐԱՑԵԱՆ*

գեղարուեստական ճոխ բաժին։ Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ։

## ՖՐԱՆՍԱԿԱՆ ԲԱՆԱԿԻ ՆԱԽԿԻՆ ՀԱՅ ԿԱՄԱՒՈՐՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԻՒՆԸ

*Մեծ պատերազմին զոհուած հայ կամաւորներու յիշատակին հանդիսաւոր պատարագ մատուցանել կուտայ, Փարիզի Հայոց եկեղեցիին մէջ, Մայիս 31ին, Կիրակի օր, ժամը 11ին։*

*Ներկայ պիտի գտնուին Ֆրանսայի զին. եւ քաղաք. անձնաւորութիւններ, ինչպէս նաեւ Ֆրանսայի եւ այլ նախկին կամաւորական միութիւններու ներկայացուցիչներ։*

ՕՐ. ՍԻՐԱՆՈՅՇ ՋԸԼԸԴԵԱՆ

ԵՒ

ԸՆԿ. ՆԻԿՈՂՈՍ ԹԱՆՏՐԵԱՆ

ՆՇԱՆՕՒԱԾ

*Վալանս* *Լիոն*

*23 Մայիս 1931*

ՕՐ. ՀԱՅԿԱՆՈՅՇ ԿՕՇԿԱԿԱՐԵԱՆ

ԵՒ

ԱՐՍԷՆ ՊԷՐՊԷՐԵԱՆ

(խարբերդցի)

*ԱՄՈՒՍՆԱՑԱԾ*

*Դարեթ, 23 Մայիս 1931*

ՕՐ. ՍԻՐԱՆՈՅՇ ԱՒԱԳԵԱՆ

ԵՒ

ՄԻՔԱՅԷԼ ՄԻՔԱՅԷԼԵԱՆ

(Պօլսեցի)

ՆՇԱՆՈՒԱԾ

վալանս 17 մայիս 1931

## Հ. Յ. Դ.

*ՓԱՐԻԶ*

ՊԻՑԵԱՆՔՈՒՌԻ Ջաւարեան կոմիտէի ժողովը վաղը ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին. 186 Av. Verdun, ներկայ կ'ըլլայ կ. կ.ի ներկայացուցիչը։

ԱՆԻԷՌ, Պուա-Քոլոմպի Զէյթուն կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ եռագոյն, փոթորիկ եւ վիշապեան խումբերը այսօր Հինգշաբթի իրիկուն ժամը ճիշդ 8.45ին, 80 Rue Charles-Chefson, Պուա Քոլոմպ։ կարեւոր օրակարգ։ բացակաները նկատի պիտի առնուին։

*ՇԱՎԻԼ Արցութեան խումբի ժողովը այս Կիրակի ժամը 5ին,*

*Մոնփարնասի կայարանին դիմացի սրճարանը։*

*ԳԱՒԱՌ*

*ՏԷՍԻՆԻ Պատանեկան միութեան վիճաբանական ժողովը վաղը Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին Պ. Սատօյեանի ճաշասրահին մէջ։ Նիւթ՝ «Նոր սերունդի փրկութեան հարցը»։ Կը հրաւիրուին ընկերներն ու համակիրները։*

## ՑՈՒՑԱՏԵՏՐ

ՖՐԱՆՍԱԿԱՆ բանակի հայ նախկին կամաւորներու միութեան ընդհ. ժողովը վաղը ժամը 9ին, 4 Rue de la Grange Batelière ծխավաճառին վերնայարկը։

Բոլոր նախկին կամաւորները որոնք դեռ չեն արձանագրուած, կը խնդրուին ներկայ գտնուիլ։ կարեւոր օրակարգ։

Բոլոր անդամներէն կը խնդրուի անպայման ներկայ գտնուիլ։

Զ. Ռ. Միութեան փարիզի վահագն գրադարանին դասախօսութիւնը այսօր, Հինգշաբթի իրիկուն ժամը 9ին ֆլորիայի մէջ։ կը դասախօսէ պ. Գիւլխանդանեան։ Նիւթ՝ Պաքուի ջերոսամարտը։ Մէկ ժամ սինէմա։ կը հրաւիրուին անդամներն ու համակիրները։

### ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ

*Հ. Յ. Դ. Տէսինի Պատանեկան միութեան կողմէ։*

*Յունիս 21ին*

*Կը խնդրոնի նկատի ունենալ այդ թուականը։*

ՄԱՅԻՍ 30ԻՆ ԼՈՅՍ ԿԸ ՏԵՍՆԷ

խմբագրութեամբ

Ս. ԹՈՐՈՍԵԱՆԻ

ՆԱՅԻՐԻ ԱՇԽԱՐՀ

պատկերազարդ

ամսաթերթի առաջին թիւր

գինը 1 ֆրանք 50 սանթիմ

*Դիմել՝ Հրանտ Սամուէլ գրատուն եւ ծանօթ քէօշկերը։*



## TOURNÉE KARAKACHE — THEATRE EDEN 7 AVE. CLICHY

ՄԵԾ ԹԱՏՐՈՆ — ՄԻԱՅՆ 2 ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

*Յունիս 3 Չորեքշաբթի եւ Յունիս 4 Հինգշաբթի՝ ժամը 9ին*

*Պոլսէն նոր ժամանած ՇԱՒԱՐՇ ԳԱՐԱԳԱՇ («Լէպլէպիճի»ի յայտնի Սանսարը), Տիկ. ԺԷՐՖԻՆ (Ֆաթիմէ), ԱՐԱՄ ԽԱՉԱՏՐԵԱՆ (Խուրշիտ պէյ), կատարեալ ամբողջութեամբ —եւ բնագրին լեզուով—*

ՊԻՏԻ ՆԵՐԿԱՅԱՑՆԵՆ Տ. ՉՈՒՀԱՃԵԱՆԻ ԵՒ Ա. ՆԱԼԵԱՆԻ ԱՆՄԱՀ ՕՓԷՐԷԹԸ

## ԼԷՊԼԷՊԻՃԻ ՀՈՐՀՈՐ ԱՂԱ

*Ս. ԱԼԻՔՍԱՆԵԱՆ՝ Սաֆէտիլ գալֆա, ԳՄԲԷԹԵԱՆ՝ Հօրհօր աղա, ԱՆԱՀԻՏ՝ Գամէր*

երկսեռ մեծ խմբերգ, մեծ նուագախումբ

*ԿԱՎՌՕՇ - ԹՕԼԱՅԵԱՆ՝ ի պատիւ իր վաղեմի ընկերներուն, յօժարած է ստանձնել Ճինկէօզի իր հին դերը այս երկու ներկայացումներուն համար։ Փարիզի բոլոր արեւելքցիները ներկայ պիտի ըլլան այս երկու ներկայացումներուն։*

*Տոմսերու գիները եղած են ամէն քսակի յարմար՝ 5 ֆրանքէն մինչեւ 30 ֆրանք։*

*Օթեակներն ալ նոյն գինին մէջն են։ Ոչ ոքի տոմսակ պիտի ուղարկուի։ Տոմսակները կանուխէն կը ծախուին՝ ԿԱՎՌՕՇի* մօտ, 208bis rue Lafayette, պ. Արթինեան, 26 rue Lesage, սափրիչ պ. Գէորգեան, 24 St. Lazare եւ Թատրոնի կիշն։

## «ՆՈՐ ԵՐԳԵՐ»

### ԱՐԱՅ ՊԱՐԹԵՒԵԱՆԻ

*Լոյս տեսան Ա. Բ. Գ. եւ Դ. շարքերը, հետեւեալ կազմով.*

Ա. շարք.— *Գիշերային օրօր, հիասթափում։*

Բ. շարք.— *Ես որ մեռնիմ, հովուերգութիւն, սիրերգ։*

Գ. շարք.— *Հիւղը, աշուղական, գարունն եկաւ։*

Դ. շարք.— *Երազ, պանդուխտի ծառը, գիւղիս ճամբան։*

*Երգերու խօսքերը առնուած են հայ քնարական բանաստեղծութեննէն։ Գին 15 ֆր. իւրաքանչիւր շարք ստանալու համար գիմել հեղինակին,* 23 Rue del'Amiral Mouchez, Paris (*13e*).

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

*— Կը փնտռուի Շ. Գարահիսարի Աղուանիս գիւղէն Հայկազուն Տիւտիւքճեան կամ Տէրտէրեան որ 1916ին տեղահանութեան միջոցին տեսնուած է, Սեբաստիա - Մալաթիա ճամբուն վրայ։ Իր մասին լուր ունեցողներէ կը խնդրուի իմացնել՝ իր քրոջ Ազնիւ Փիլիքեանի, 18* Rue Denoyez, Paris(20).

*Կը խնդրուի յունահայ եւ Սուրիահայ թերթերէն արտատպել։*

*— Գարակէօզեան Հօվէն Գարեգին Համալեան կը փնտռէ իր հօրեղբօր աղջիկը Օր. Էլմաս Քիւփէճեան (Օրտուցի) որ Սուրիայէն Ֆրանսա անցած ըլլալը կ'ենթադրուի։*

*Հօվէն Արտաւազդ Բէֆիլսըզեան կը փնտռէ իր հօրեղբօր կինը, Տրապիզոնցի Տիկ. Շապուհի Բէֆիլսըզեան եւ զաւակը Գրիգոր, զոր վերջին անգամ Պոլիս թողած է։ Իմացնել՝* Karagheuzian Home, La Gaudinière, Ville-aux-Clercs, (Loir et Cher). France.

4-5000 մեթր բարձրութեան վրայ։ Այդ բարձրութեան վրայ կեցաւ մէկ քանի ժամ, առանց վար իջնել փորձելու, ինչ որ մտահոգութիւն պատճառեց սկսաւ դիտողներուն։ Որովհետեւ Փիքար մտադրութիւն յայտնած էր գետին իջնելու 12ի կամ 1ի առեններ։

Օդապարիկին թթուածինի պաշարը կը բաւէր 15-20 ժամուան համար. շատոնց ուրեմն սպառած է եւ վախ կայ որ նաւորդները մեռած ըլլան դաժան հոգեվարքէ մը վերջ, օդի սակաւութեան պատճառով։

Փրոֆ. Փիքար որ զուիցերիացի է, երկար ատենէ ի վեր կը պատրաստուէր այս փորձին։ Իր գլխաւոր նպատակն էր կատարել կարգ մը գիտական փորձեր, որոնք ցարդ կը մնային աշխատանոցներու մարզին մէջ։ Կ'ուզէր մանաւանդ ստուգել թէ ամրօրէն փակ խցիկներու մէջ, օդանաւորդները կրնայի՞ն որոշ բարձրութեան վրայ, թռիլ զարհուրելի արագութեամբ, օդի անօսրութենէն օգտուելով։



## "ՄԱՅԻՍ 28„Ը ԿԸ ՏՕՆՈՒԻ

### ՓԱՐԻԶ

ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԱԾ ԵՒՐՈՊԱՅԻ Հ. Յ. Դ. ԿԵԴՐ. ԿՈՄԻՏԷԻՆ ԵՒ ՓԱՐԻԶԻ ԿՈՄԻՏԷԻՆ ԿՈՂՄԷ

*Վաղը Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին*

*Փըլթի ժուռնալի սրահին մէջ, Մէթրօ Քատէ*

*կը խօսին՝ ՇԱՒԱՐՇ ՄԻՍԱՔԵԱՆ եւ Մ. ԳՈՒՅՈՒՄՃԵԱՆ*

գեղարուեստական բաժնին կը մասնակցին Տիկ. ԳԵՒՈՆԵԱՆ, Օր. Աղաբէկեան, Պ. Ս. Նաւասարդեան (երգ), Ս. ԹՈՐՈՍԵԱՆ (արտասանութիւն), «ՍԻՓԱՆ» երգչախումբը ղեկավարութեամբ Պ. ՍԱՔՕ ՅԱԿՈԲԵԱՆԻ։

Մ ո ւ տ ք ը ա զ ա տ է

ծախքերու մասնակցութեան համար կը գանձուի 3 ֆրանք

### Ռ Ո Ա Ն

*Վաղը Շաբաթ իրիկուն ժամը 8,30ին*

*կը խօսի՝ ՀԱՅԿ ՍԵՐԷՆԿԻՒԼԵԱՆ*

### Վ Ի Է Ն

Այս կիրակի կէսօրէն վերջ ժամը 2ին

Cercle Catholiqueի սրահին մէջ, 1 Rue des Cloîtres

*կը խօսի՝ Օ Հ Ա Ն Կ Ա Ր Օ*

գեղարուեստական ճոխ բաժին,

երգեր եւ արտասանութիւններ

### Լ Ի Ո Ն

*6 Յունիս Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին*

*Գ, Թաղապետարանի սրահին մէջ*

*կը խօսի՝ ՍԻՄՈՆ ՎՐԱՑԵԱՆ*

գեղարուեստական ճոխ բաժին։ Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ։

### Տ Է Ս Ի Ն

7 յունիս կիրակի կէսօրէ վերջ

## ՖՐԱՆՍԱԿԱՆ ԲԱՆԱԿԻ ՆԱԽԿԻՆ ՀԱՅ ԿԱՄԱՒՈՐՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԻՒՆԸ

*Մեծ պատերազմին զոհուած հայ կամաւորներու յիշատակին հանդիսաւոր պատարագ մատուցանել կուտայ, Փարիզի Հայոց եկեղեցիին մէջ, Այս Կիրակի օր, ժամը 11ին։*

*Ներկայ պիտի գտնուին Ֆրանսայի զին. եւ քաղաք. անձնաւորութիւններ, ինչպէս նաեւ Ֆրանսայի եւ այլ նախկին կամաւորական միութիւններու ներկայացուցիչներ։*

## Հ. Յ. Դ.

***Փ Ա Ր Ի Զ***

ՊԻՅԵԱՆՔՈՒՌԻ Ջաւարեան կոմիտէի ժողովը այսօր ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին. 186 Av. Verdun, ներկայ կ'ըլլայ Կ. Կ.ի ներկայացուցիչը։

*ՇԱՎԻԼ Արցութեան խումբի ժողովը այս Կիրակի ժամը 5ին, Մոնփարնասի կայարանին դիմացի սրճարանը։*

***Գ Ա Ր Ա Ռ***

*ՏԷՍԻՆԻ Պատանեկան միութեան վիճաբանական ժողովը այսօր Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին Պ. Սատօյեանի ճաշարանին մէջ։ Նիւթ՝ «Նոր սերունդի փրկութեան հարցը»։ Կը հրաւիրուին ընկերներն ու համակիրները։*

ՄԱՐՍԷՅԼԻ Աղբիւր Սերոբ ենթակոմիտէին ընդհ. ժողովի կը հրաւիրէ Սայիդօ. Աւագ-Առիւծ եւ կորիւն խումբերը 63 Rue de la République. կարեւոր օրակարգ։

### ՀՐԱՒԷՐ ՇԱՎԻԼԻ ԵՒ ՇՐՋԱԿԱՅԻՑ ՀԱՅՈՒԹԵԱՆ

Վարչութեանս խնդրանաց վրայ, Արժ. Տ. Բարթող Աւագ քհնյ. Թագըրճեան տեղւոյս մէջ առաջին անգամ ըլլալով Ս. Պատարագ պիտի մատուցանէ եւ հոգեւորապէս մխիթարէ հաւատացեալ ժողովուրդը, այս կիրակի առաւօտ, մանկապարտէզի սրահին մէջ, 20 Ave. Ville d'Avray, Chaville. Սկզբ. Ս. Պատարագի ժամը 9ին։ Կը հրաւիրենք մեր բոլոր հայրենակիցները, փութալ ի հոգեւոր մխիթարութիւն։

*(Կնիք)*

### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Ողբացեալ ԳԷՈՐԳ ԷՔՍԷՐՃԵԱՆԻ մահուան քառասունքի առթիւ, հոգեհանգիստի արարողութիւնը պիտի կատարուի մայիս 31ին, Պուքրէշի Հայոց եկեղեցիին մէջ։ Այս առթիւ Այրի Տիկին Գ. Էքսէրճեան (1000) հազար ֆրանք կը նուիրէ փարիզի Հայ կարմիր խաչին, *Յառաջի* միջոցաւ։

### ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Հ. Յ. Դ. վիէնի մեկուսի ենթակոմիտէն իր բոլոր ընկերներու եւ խումբերու կողմէ, ցաւակցութիւնն կը յայտնէ Տէր եւ Տիկին ընկ. Զ. ՂՈՒԿՈՅԵԱՆԻ, իրենց սիրելի փոքրիկին ԱԼԻՍԻ տխուր մահուան առթիւ։

## ՑՈՒՇԱՏԵՏՐ

ՖՐԱՆՍԱԿԱՆ բանակի հայ նախկին կամաւորներու միութեան ընդհ. ժողովը այսօր ժամը 9ին, 4 Rue de la Grange Batelière ծխավաճառին վերնայարկը։

Բոլոր նախկին կամաւորները որոնք դեռ չեն արձանագրուած, կը խնդրուին ներկայ գտնուիլ։

կարեւոր օրակարգ։

Բոլոր անդամներէն կը խնդրուի անպայման ներկայ գտնուիլ։

### ԱՌՈՂՋԱՊԱՀԱԿԱՆ ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ

Հ. Կ. Խաչի, փարիզի Հայ Տիկնանց Միութեան եւ փարիզի հայ բժշկական միութեան կողմէ կազմակերպուած Salle des Sociétés Savantesի մէջ, 28 Rue Serpente, Paris (6).

Այսօր Ուրբաթ իրիկուն ժամը 9ին, Salle G.ի մէջ։

Նիւթ Ա.— Բերնի հիւանդութիւններ ու ակռաներ՝ կը խօսի Տօքթ. Սասունի։

Բ.— Ստամոքսի հիւանդութիւններ՝ կը խօսի Տօքթ. Ե. Մինասեանց։



## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

*— Կը փնտռուի Շ. Գարահիսարի Աղուանիս գիւղէն Հայկազուն Տիւտիւքճեան կամ Տէրտէրեան որ 1916ին տեղահանութեան միջոցին տեսնուած է, Սեբաստիա-Մալաթիա ճամբուն վրայ։ Իր մասին լուր ունեցողները կը խնդրուի իմացնել՝ իր քրոջ Ազնիւ Փիլիքեանի,* 18 Rue Denoyez, Paris (20).

*Կը խնդրուի յունահայ եւ Սուրիահայ թերթերէն արտատպել։*

*— Գարակէօզեան Հօմէն Գաբրիէլ Համալեան կը փնտռէ իր հօրեղբօր աղջիկը Օր. Էլմաս Բիւփէճեան (Օրտուցի) որ Սուրիայէն Ֆրանսա անցած ըլլալը կ'ենթադրուի։*

*Հօմէն Արտաւազդ Բէֆինսիզեան կը փնտռէ իր հօրեղբօր կինը, Տրապիզոնցի Տիկ. Շապուհի Բէֆինսիզեան եւ զաւակը Գրիգոր, զոր վերջին անգամ Պոլիս թողած է։ Իմացնել՝* Karagheuzian Home, La Gaudinière, Ville-aux-Clercs, (Loir et Cher). France.

— կը փնտռուի Զառացի (Սեբաստիա) Արուսեակ Ասլանեան որ 4 տարի առաջ Պաղտատի Հայոց եկեղեցիին պատին վրայ փակցուած գրութիւնով մը փնտռած է իր ազգականները։ Այժմ 23 տարեկան է։ Իմացնել R. Aslanianի, Dugradus par Ucel, Ardèche, France. Իր ճշգրիտ հասցէն լուր տուողին 200 ֆրանք։

— Մշոյ Ջոր Թաղեցի Խորէն տէր Սահակ փոթոեան կը փնտռէ իր հօրեղբայրը Նալպանտ քնիազի որդին Գեղամ։ Լուր կայ թէ ընդհանուր տեղահանութեան միջոցին ազատուելով մեկնած է Ամերիկա եւ հաստատուած է Ֆրէզնօ։ Կը խնդրուի հայրենակիցներէ իր հասցէն յայտնել Khoren Postoyanի, Usine de Menarde, St. Albau, La Grive, Isère, France.

Կը խնդրուի արտասահմանեան թերթերէն արտատպել։

### ԳՏՆՈՒԱԾ

Թուռ, Ա. Պարսամեան.— Պ. Առաքելեանի ազգականները գտնուած են։ Հաղորդեցէք մեզ իր հասցէն։

### ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ

*Հ. Յ. Դ. Տէսինի Պատանեկան միութեան կողմէ։*

*Յունիս 21ին*

*Կը խնդրուի նկատի ունենալ այդ թուականը։*




IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H. STEPHAN

քանդուեցան նաեւ բազմաթիւ տուներ, բնակիչները փլատակներու տակ թաղելով։

Քավալայէն ալ Ներքին Նախարարութեան կը հաղորդեն թէ զինարանի մը պայթումին հետեւանքով, 4 հոգի վիրաւորուեցան։ Ասկէ զատ հրդեհ մը յառաջ եկաւ որ մոխրացուց բազմաթիւ տուներ եւ վաճառատուններ։

Վնասը 25 միլիոն տրախմի կը հաշուուի։ Քաղաքը ամբողջ յուզումի մատնուած է։ Կը կարծուի թէ համայնավարներու գործ է։

Քավալայէն եկած ուրիշ հեռագրի մը համաձայն, որսորդական եւ մարզական նիւթեր ծախող Եօանիտէս եղբայրներու վաճառատան մէջ զարհուրելի պայթում մը առաջ եկաւ, շէնքին ճակատամասը քանդուեցաւ եւ ցուցափեղկին մէջ գտնուող զէնքերը տարտղնուեցան փողոցին մէջ, վիրաւորելով ոստիկան զինուոր մը, գիւղացի մը, շարժավար մը եւ «Բիրիքս» թերթին պատասխանատու տնօրէնը։

Խուճապ յառաջ եկաւ քաղաքին մէջ և ծայրայեղ աստիճանի մը հասաւ երկրորդ պայթումի մը հետեւանքով։ Կարեւոր քանակով փամփուշտներ պայթեցան եւ մեծ վնաս պատճառեցին շրջակայ վաճառատուններուն եւ դրամատուններուն։

## Անգործութեան տագնապին դէմ

Երէկ, Ժընեւի մէջ բացուեցաւ աշխատանքի միջազգային խորհրդաժողովը։ Օրակարգի գլխաւոր նիւթերն են. պատանիներու աշխատութեան տարիքը, աշխատանքի տեւողութիւնը ածխահանքերու մէջ, կիներու գիշերային աշխատանքին պայմանադրութեան վերաքննութիւնը։

Բայց ամենէն կարեւոր հարցը որ դրուած է սեղանի վրայ, անգործութիւնն է, որուն դէմ պայքարի յատուկ առաջարկներ պիտի ուսումնասիրուին։



## TOURNÉE KARAKACHE ՄԻԱՅՆ 2 ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ EDEN 7 AVE. CLICHY

Յունիս 3 Չորեքշաբթի եւ Յունիս 4 Հինգշաբթի՝ ժամը 9ին

Պոլսէն նոր ժամանած ՇԱՒԱՐՇ ԳԱՐԱԳԱՇ («Լէպլէպիճի»ի յայտնի Սանտարը), Տիկ. ԺԻՐՖԻՆ (Ֆաթիմէ), ԱՐԱՄ ԽԱՉԱՏՐԵԱՆ (Խուրշիտ պէյ), կատարեալ ամբողջութեամբ —եւ բնագրին լեզուով—

ՊԻՏԻ ՆԵՐԿԱՅԱՑՆԵՆ Տ. ՉՈՒՀԱՃԵԱՆԻ ԵՒ ՆԱԼԵԱՆԻ ԱՆՄԱՀ ՕՓԷՐԷԹԸ

# ԼԷՊԼԷՊԻՃԻ ՀՈՐՀՈՐ ԱՂԱ

Ս. ԱԼԻՔՍԱՆԵԱՆ՝ Սաֆէտիլ գալֆա, ԳՄԲԷԹԵԱՆ՝ Հօրհօր աղա, ԱՆԱՀԻՏ՝ Գամէր եւ ԿԱՎՌՕՇ - ԹՕԼԱՅԵԱՆ՝ Ճինկէօզ

երկսեռ մեծ խմբերգ, նուագախումբ ղեկավարութեամբ Պ. ՄԻՇԷԼ ՍԻՐԻՆԵԱՆՕՖի, դաշնակի առջեւ՝ Օր. ԺԷՆԵՒ ԱԹԱՆԱՍԻԷՖ

ՖԷՐԻՏԷ ՀԱՆԸՄ՝ իր արեւելեան պարերուն մէջ

ՏՈՄՍԵՐԸ 5, 10, 15, 25, ԵՒ 30 ՖՐԱՆՔ

Ոչ ոքի տոմսակ պիտի ուղարկուի։ Տոմսակները կանուխէն կը ծախուին՝ ԿԱՎՌՕՇի մօտ

208bis rue Lafayette, Պ. Արթինեան, 26 rue Lesage, սափրիչ Պ. Գէորգեան, 24 St. Lazare եւ Թատրոնի կիշէն

## "ՄԱՅԻՍ 28„Ը ԿԸ ՏՕՆՈՒԻ

ՓԱՐԻԶ

ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԱԾ ԵՒՐՈՊԱՅԻ Հ. Յ. Դ. ԿԵԴՐ. ԿՈՄԻՏԷԻՆ

ԵՒ ՓԱՐԻԶԻ ԿՈՄԻՏԷԻՆ ԿՈՂՄԷ

Այսօր Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին

Փըթի ժուռնալի սրահին մէջ, Մէթրօ Քատէ

Կը նախագահէ՝ ԱՐՏԱՒԱԶԴ ՀԱՆԸՄԵԱՆ

Կը խօսին՝ ՇԱՒԱՐՇ ՄԻՍԱՔԵԱՆ եւ Մ. ԳՈՒՅՈՒՄՃԵԱՆ

Գեղարուեստական բաժնին կը մասնակցին Տիկ. ԳԵՒՈՆԵԱՆ, Օր. Աղաբէկեան, Պ. Ս. Նաւասարդեան (երգ), Ս. ԹՈՐՈՍԵԱՆ (արտասանութիւն), «ՍԻՓԱՆ» երգչախումբը ղեկավարութեամբ Պ. ՍԱՔՕ ՅԱԿՈԲԵԱՆի։

Մուտքը ազատ է

Ծախքերու մասնակցութեան համար կը գանձուի 3 ֆրանք

ՌՈԱՆ

Այսօր Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին

Կը խօսի՝ ՀԱՅԿ ՍԷՐԷՆԿՈՒԼԵԱՆ

ՎԻԷՆ

վաղը կիրակի կէսօրէն վերջ ժամը 2ին

Cercle Catholiqueի սրահին մէջ, 1 Rue des Cloîtres

Կը խօսի՝ ՕՀԱՆ ԿԱՐՕ

գեղարուեստական ճոխ բաժին,

երգեր եւ արտասանութիւններ

## ՖՐԱՆՍԱԿԱՆ ԲԱՆԱԿԻ

### ՆԱԽԿԻՆ ՀԱՅ ԿԱՄԱՒՈՐՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԻՒՆԸ

Մեծ պատերազմին զոհուած հայ կամաւորներու յիշատակին հանդիսաւոր պատարագ մատուցանել կուտայ, Փարիզի Հայոց եկեղեցիին մէջ, վաղը Կիրակի օր, ժամը 11ին։

Ներկայ պիտի գտնուին Ֆրանսայի զին. եւ քաղաք. անձնաւորութիւններ, ինչպէս նաեւ Ֆրանսայի եւ այլ նախկին կամաւորական միութիւններու ներկայացուցիչներ։

Կը հրաւիրուի Հայ ժողովուրդը



## Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶ

ՊԷՔՈՆԻ Մասիս խումբի հերթական դասախօսական ժողովը՝ այս երեքշաբթի Յունիս 2ին երեկոյեան ժամը 8.30ին սովորական հաւաքատեղին, (Buvette de la Gareի սրահին մէջ, կը խօսի՝ ընկ. ՇԱՒԱՐՇ ՄԻՍԱՔԵԱՆ նիւթ՝ «Մեր քաղաքական հեռանկարները»։

ՇԱՎԻԼ Արդութեան խումբի ժողովը վաղը Կիրակի ժամը 5ին, Մոնփարնասի կայարանին դիմացի սրճարանը։

ԳԱՒԱՌ

ՄԱՐՍԷՅԼԻ Աղբիւր Սերոբ ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ Սայիդօ. Աւագ-Առիւծ եւ Կորիւն խումբերը 63 Rue de la République. կարեւոր օրակարգ։

ՄԱՐՍԷՅԼԻ Պատ. Միութեան վարչութիւնը ընդհ. ժողովի կը հրաւիրէ Մարսէյլի, Սէն Լուի եւ ՊուլվարՕտտօյի բոլորընկերները, այս Կիրակի ժամը 3ին, Գրադարան ընթերցասրահին մէջ։ Պարտաւորիչ ներկայութիւն։ Ներկայ պիտի ըլլայ կոմիտէին ներկայացուցիչը։

## ՑՈՒՑԱՏԵՏՐ

Զ. Ռ. միութեան փարիզի մասնաճիւղին ընդհ. ժողովը այս երկուշաբթի իրիկուն ժամը 9ին Ֆլորիայի մէջ, կարեւոր օրակարգ, խորհրդակցութեան կը հրաւիրուին փարիզի շրջակայ մասնաճիւղերու վարչութիւնները։

## «ՆՈՐ ԵՐԳԵՐ»

### ԱՐԱՅ ՊԱՐԹԵՒԵԱՆԻ

Լոյս տեսան Ա. Բ. Գ. եւ Դ. շարքերը, հետեւեալ կազմով.

Ա. շարք.— Գիշերային օրօր, հրաժեշտ։

Բ. շարք.— Ես որ մեռնիմ, հովուերգութիւն, սիրերգ։

Գ. շարք.— Հիւղը, աշուղական, գարունն եկաւ։

Դ. շարք.— Երազ, պանդուխտի ծառը, գիւղիս ճամբան։

Երգերու խօսքերը առնուած են հայ քնարական բանաստեղծութեննէն։ Գին 15 ֆր. իւրաքանչիւր շարք ստանալու համար դիմել հեղինակին, 23 Rue del'Amiral Mouchez, Paris (13e).



## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Կը փնտռուի Զառացի (Սեբաստիա) Արուսեակ Ասլանեան որ 4 տարի առաջ Պաղտատի Հայոց եկեղեցիին պատին վրայ փակցուած գրութիւնով մը փնտռած է իր ազգականները, այժմ 23 տարեկան է, իմացնել R. Aslanianի, Dugradus par Ucel, Ardèche, France. իր ճշգրիտ հասցէն լուր տուողին 200 ֆր. նուէր։

— Մշոյ Զոր Թաղեցի խորէն տէր Սահակ Փոսթօեան կը փնտռէ իր հօրեղբայրը Նալպանտ քնիազի որդին Գեղամ։ Լուր կայ թէ ընդհանուր տեղահանութեան միջոցին ազատուելով մեկնած է Ամերիկա եւ հաստատուած է Ֆրէզնօ, կը խնդրուի հայրենակիցներէ իր հասցէն յայտնել Khoren Postoyanի, Usine de Menarde, St. Alban, La Grive, Isère, France.

Կը խնդրուի արտասահմանեան թերթերէն արտատպել։




IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS

208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H STEPHAN














## Կռիւ Հայերու միջեւ

Հալէպի հայկական կայաններուն մէջ տեղի ունեցաւ մեծ կռիւ մը, որուն հետեւանքով արաբ ոստիկան մըն ալ սպաննուեցաւ։ Կռիւն արգիլելու համար, երկու ոստիկաններ որոնք կ'ուզէին կայան մտնել, արգիլուեցան Հայերու կողմէ։ Ոստիկաններէն մէկը փորձեց հրմշտուքով ներս մտնել։ Սակայն Նազարէթ անուն հայ մը դաշոյնը քաշելով յարձակեցաւ ոստիկանին վրայ եւ բազմաթիւ հարուածներով սպաննեց զայն։

Միւս ոստիկանը, օգնելու համար իր ընկերոջ, իր կարգին յարձակեցաւ Նազարէթի վրայ, որ դաշոյնի հարուածով մը ստիպեց զայն ետ քաշուիլ։

Նազարէթ ձերբակալուեցաւ։

## «Պողպատէ սաղաւարտներ»ը գործի վրայ

Այսօր, Գերմանիոյ «Պողպատէ Սաղաւարտներ»ը մեծ զօրանցք մը կը կատարեն Պրէսլաւի մէջ։ Աւելի քան 150,000 անձեր զօրանցք մը պիտի կատարեն։ Ոստիկանութիւնն իմացած ըլլալով որ ձախ տարրերը մտադրած են խանգարել այս ցոյցերը եւ խռովութիւններու տեղի տալ, դիմեց զինուորական իշխանութեանց, օգնական ուժեր ստանալու համար։

«Պողպատէ Սաղաւարտ»ներու այս տարեկան հաւաքոյթին կը մասնակցին նաեւ զանազան ազգայնական կազմակերպութիւններ եւ բազմաթիւ ուսանողական միութիւններ։

«Պողպատէ Սաղաւարտ»ներու պետերէն մէկը, զանազան շրջաններու պատուիրակութեանց առջեւ ճառ մը խօսեցաւ եւ մասնաւորաբար յայտնեց թէ ինք եւ իր կուսակիցները կը հաւատան Գերմանիոյ ապագային եւ թէ ոչինչ պիտի կրնայ կասեցնել աշխարհի ամէնէն ընդունակ ժողովուրդին՝ Գերմաններու յառաջդիմութիւնը։ «Պողպատէ Սաղաւարտ»ները չպիտի լքեն գերմանական որեւէ հողամաս, որեւէ գաղթավայր եւ կը պահանջեն որ Գերմանիա վերստանայ զինուելու իր իրաւունքը, իր ուզած ձեւով։




IMPRIMERIE - **MASSIS** - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H STEPHAN